Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 9 ՄԱՅԻՍ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*

---

# ՄԱՍՍԱՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐ-ԼՈՒՍԱՎՈՐԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՆԵՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

*Լենինի—Ստալինի պարտիան, Սովետական կառավարությունը մեծ ուշադրություն և հոգատարություն են ցուցաբերում մասսաների քաղաքական դաստիարակության, նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ։ Մեր երկրում ստեղծվել են բոլոր պայմանները կուլտուրայի զարգացման ու ծաղկման համար։ Մասսաների կուլտուրական ու քաղաքական մակարդակի բարձրացումը հանդիսանում է սովետական հասարակարգի կենսական պահանջը։ Մեծ Լենինը գրել է, որ «...ոչ մի տեղ ժողովրդական մասսաները այնպես շահագրգռված չեն իսկական կուլտուրայով, ինչպես մեզ մոտ, ոչ մի տեղ այդ կուլտուրայի հարցերը չեն դրվում այնպես խորը և այնպես հետևողականորեն, ինչպես մեզ մոտ»։*

*Սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ծրագիրը պահանջում է կուլտուրայի նոր առաջընթաց, մասսաների քա-*

ղաքական դաստիարակության ուժեղացում, մասսաների սոցիալիստական գիտակցության ավելի քան բարձրացում, որպեսզի մարդկանց գիտակցության միջից իսպառ վերացվեն կապիտալիզմի մնացուկները:

«Սոցիալիզմի էկոնոմիկական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» հանճարեղ աշխատության մեջ ընկեր Ստալինը խոսելով կոմունիզմին անցնելու երեք հիմնական նախապայմանների մասին, ասում է. «Անհրաժեշտ է, երրորդ, հասնել հասարակության այնպիսի կուլտուրական աճման, որը հասարակության բոլոր անդամների համար ապահովի նրանց ֆիզիկական ու մտավոր ընդունակությունների բազմակողմանի զարգացումը, որպեսզի հասարակության անդամները հնարավորություն ունենան ստանալու բավականաչափ կրթություն՝ հասարակական զարգացման ակտիվ գործիչներ դառնալու համար, որպեսզի նրանք հնարավորություն ունենան ազատորեն ընտրելու պրոֆեսիա և ոչ թե, աշխատանքի գոյություն ունեցող բաժանման հետևանքով, ամբողջ կյանքում գամված լինեն մեկ որևէ պրոֆեսիայի»:

Աշխատավորների կուլտուրական աճման, նրանց քաղաքական-գիտական պատրաստականության մակարդակը բարձրացնելու



կատարվելու
գործում մեծ աշխատանք ունեն
կուլտուր-լուսավորական հիմնարկները՝ կուլ-
տուրայի տները, ակումբները, գրադարան-
ները, կուլտուրայի և հանգստի զբոսայգի-
ները, թանգարանները: Մեր երկրի կուլտու-
րական այդ օջախներն իրենց գործունեու-
թյամբ պետք է նպաստեն սովետական
մարդկանց ֆիզիկական ու մտավոր ընդու-
նակությունների բազմակողմանի զարգաց-
մանը, ակտիվ կերպով օգնեն նրանց զինվե-
լու Լենինի—Ստալինի պարտիայի մեծ գա-
ղափարներով:

Սովետական Միությունը պատած է կուլ-
տուր-լուսավորական հիմնարկների խիտ
ցանցով: Միայն Սովետական Հայաստանի
քաղաքներում ու գյուղերում այժմ գործում
են 974 ակումբ, 52 կուլտուրայի տուն, 1050
քաղաքային, գյուղական և շրջանային գրա-
դարան, 321 ստացիոնար և շրջիկ կինո-
թատրոն: Բոլոր շրջաններն ունեն իրենց
տպագիր թերթերը և ռադիո հանգույցները:
Հայկական Սովետական Սոցիալիստական
Ռեսպուբլիկայում չկա մի բնակավայր, որ
իրեն ակումբը, ռադիոն և գրադարանը չու-
նենա:

Այժմ կարևորագույն հարց է, որ խելացի,
մտածված, արդյունավետ կերպով և իդեա-

կան բարձր մակարդակով աշխատեն կուլտուրայի այդ օջախները։

Աշխատավորների սոցիալիստական գիտակցությունը բարձրացնելու կարևոր միջոցներից մեկը՝ դա քաղաքական և գիտալուսավորական թեմաների վերաբերյալ զեկուցումների և զրույցների կազմակերպումն է։ Կուլտուր-լուսավորական հիմնարկները պետք է աշխատավորների համար կազմակերպեն դասախոսություններ, զեկուցումներ և զրույցներ, որոնց միջոցով մասսաներին դաստիարակեն կոմունիզմի ոգով, սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության ոգով, անհաշտ պայքար ծավալեն մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ, հատկապես նացիոնալիզմի ռեցիդիվների դեմ։ Կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքի հիմքում ինչպես միշտ, այնպես էլ ներկայումս պետք է լինի մասսաներին դաստիարակելը մարքսիստական-լենինյան աշխարհայացքով։ Այստեղից կուլտուր-լուսավորական հիմնարկների խնդիրն է՝ մարքսիզմի կլասիկների աշխատությունների և ՍՄԿԿ 19-րդ համագումարի նյութերի մասսայականացումն ու պարզաբանումը մասսաներին։

Անխտիր բոլոր կուլտուրայի տների, ա-



կումբների, գրադարանների, թանգարանների, դասախոսական բյուրոների, գյուղական լեկտորիումների և այլ օբեկտների աշխատանքը պետք է ուղղված լինի պարտիայի 19-րդ համագումարի նյութերի մասսայականացմանը և համագումարի առաջադրած խնդիրների կատարմանը։

Կուլտուր-լուսավորական հիմնարկների առաջնահերթ խնդիրն է՝ պարտկազմակերպությունների ղեկավարությամբ գրադարաններում, ակումբներում աշխատավորությանը հանգամանորեն բացատրել Ստալինյան նոր հնգամյակի կատարման ընթացքը և պրակտիկ այն խնդիրները, որ դրված են տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության առջև։

Գրադարանները և ակումբները պետք է լայնորեն ծավալեն գրքի պրոպագանդան, ընթերցողներին մանրամասնորեն ծանոթացնելով Ստալինյան մրցանակի արժանացած գրքերին։ Գրադարանային աշխատողները պետք է կազմակերպեն առանձին գրքերի քննարկում ընթերցողների կողմից, որն անշուշտ կուժեղացնի ընթերցողների կապը գրադարանի հետ և կնպաստի նրանց գրական ճաշակի զարգացմանը։ Այդ տեսակետից խրախուսանքի արժանի աշխատանք է կատարում Բերիայի շրջանի Շահումյանի

անվան մետաքսագործվածքային գործարանի գրադարանը, որը ագիտկոլեկտիվի օգնությամբ զրույցներ է կազմակերպում Ստալինյան մրցանակի արժանացած գրքերի մասին և պարբերաբար զբաղվում գրքի պրոպագանդայով։ Այդ է պատճառը, որ գործարանի գրադարանում անընդհատ ավելանում է ընթերցողների թիվը, ուժեղանում է նրանց կապը գրադարանի հետ։

Սովետական մարդկանց կուլտուրական պահանջների անընդհատ աճը պահանջում է գրադարանային գործի հետագա ընդլայնում, բոլոր գրադարանների աշխատանքի լուրջ բարելավում։ Դրա համար նոր հնգամյակում նախատեսված է 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, մասսայական գրադարանների ցանցը ընդարձակել ոչ պակաս, քան 30 տոկոսով։

Աշխատավորության շրջանում ագիտացիոն-մասսայական աշխատանքը կազմակերպելու օջախներից մեկը դա ակումբն է։ Քաղաքական ագիտացիայի ուսանելի փորձ ունի Ստեփանավանի շրջանի Հոբարձի գյուղի ակումբը, որտեղ միայն պարտիայի 19-րդ համագումարի նյութերի շուրջը, կազմակերպվել է 66 դասախոսություն։ Ակումբին կից գործում է տարբեր տիպի 9 խմբակ՝ գե-



ղարվեստական ինքնագործ խմբակները տըվել են 41 ներկայացում և համերգ։

Ռեսպուբլիկայի ակումբներում և կուլտուրայի տներում ակումբների և գրադարանների միջոցով բնակչության համար կարդացվել են 40 հազար դասախոսություն և զեկուցում, որին մասնակցել է 2 միլիոն 500 հազար մարդ։ Ցուցադրվել է 27 հազար կինո սեանս և 14 հազար ներկայացում։

Այժմ հատուկ ուշադրություն պետք է դարձնել կուլտուր-լուսավորական հիմնարկներում կատարվող քաղաքական ագիտացիայի բարձր փղեականության ապահովելու վրա, հիշելով, որ ագիտացիայի ուժը, ամենից առաջ, բարձր փղեականության մեջ է։

Ուստի պարտիական, սովետական, պրոֆմիութենական կազմակերպությունների և ագիտկոլեկտիվների համար առաջնահերթ խնդիր է՝ արմատապես բարելավել կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքը, այն բարձրացնել պարտիայի 19-րդ համագումարի կողմից առաջադրված պատմական խնդիրների մակարդակին։

Վ. ԱՎԱԳՅԱՆ

# ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՀԱՆՔԱԳՈՐԾՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարը ամփոփեց սովետական ժողովրդի ձեռք բերած համաշխարհային պատմական հաղթանակները ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում և նշեց պարտիայի ու երկրի առջև դրված հետագա առաջընթացի վիթխարի խնդիրները։

Խորապես գիտակցելով պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումների մեծագույն նշանակությունը մեր երկրի առաջընթացի համար, Ղափանի Հանքվարչության պարտիական կազմակերպությունը ագիտացիոն-քաղաքական լայն աշխատանք է ծավալել հանքագործների շրջանում։ Ագիտացիոն ամբողջ աշխատանքն ի սպաս է դրված պարտիայի 19-րդ համագումարի ընդունած որոշումները պատվով կատարելու գործին։

Պարտիական կազմակերպության հանձ-



նարարությամբ հանքախորշերում և հանքվարչության ձեռնարկություններում 17 ագիտկոլեկտիվներ սիստեմատիկաբար ագիտացիոն-բացատրական աշխատանք են կատարում պարտիայի 19-րդ համագումարի նյութերի շուրջը։ Այստեղ ագիտացիոն-քաղաքական աշխատանքի մեջ են ներգրավված ինժեներներ, տեխնիկներ, աշխատանքի առաջավորներ և արտադրության նորարարներ։

Ագիտատորները հանքագործների շրջանում ագիտացիոն-բացատրական աշխատանքը կատարում են նախօրոք մշակված պլանով։ Ագիտացիոն զրույցը կազմակերպվում է այնպես, որպեսզի յուրաքանչյուր ունկնդիր ոչ միայն տեղյակ լինի երկրի քաղաքական կյանքին, այլև ակտիվորեն մասնակցի այդ կյանքին, հստակ պատկերացում ունենա, թե առաջիկայում ինչ է անելու ինքը՝ համագումարի որոշումները կենսագործելու համար, ինչպես ապահովել աշխատանքի արտադրողականության բարձրացումը, ինչպես հասնել արտադրանքի ինքնարժեքի իջեցման, ինչ խնդիրներ են դրված իրենց հանքի, գործարանի, ֆաբրիկայի առջև և այլն։ Այսպես, օրինակ, ֆլոտացիոն ֆաբրիկայի ագիտատոր Վ. Արզուման-

յանը ունկնդիրներին մանրամասնորեն բացատրելով մեր երկրի արդյունաբերության զարգացման վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի կողմից ընդունված դիրեկտիվները, միաժամանակ պատմեց արտադրական այն խնդիրների մասին, որ դրված են ֆաբրիկայի առջև և այն, թե ով ինչպես է աշխատում այդ խնդիրները կատարելու համար։

Հանքվարչության ագիտկոլեկտիվները պարտկազմակերպության կոմիտեի ղեկավարությամբ սիստեմատիկաբար զբաղվում են սոցիալիստական մրցության հարցերով։ Ագիտատորները հետևում են, որպեսզի հանքագործների մեջ ծավալված սոցիալիստական մրցությունը լինի ավելի արդյունավետ, որպեսզի բոլոր հանքագործները կատարեն ստանձնած պարտավորությունները։ Ագիտկոլեկտիվները սիստեմատիկաբար զբաղվում են աշխատանքում ետ մնացողներին առաջավորներին հասցնելու գործով։ Վերջերս «փոքր» հանքի ագիտատորներն ամենայն մանրամասնությամբ հանքագործներին պատմեցին սոցիալիստական մրցության առաջավոր Հ. Անտոնյանի աշխատանքի դրական փորձի մասին, որը գրեթե



միշտ իր արտադրական պլանները կատարում է 150—200 տոկոսով։

Ագիտատորների զրույցից ունկնդիրների համար պարզ դարձավ, որ աշխատանքում ընկ. Հ. Անտոնյանի ձեռք բերած հաջողությունների ամենից առաջ արդյունք են ոչ միայն նվիրված աշխատանքի, այլև այն բանի, որ նա սիստեմատիկաբար բարձրացնում է իր տեխնիկական որակավորումը, հմտորեն տիրապետել է աշխատանքի տեխնիկային, խելացիորեն օգտագործում է մյուս առաջավորների փորձը։ Ագիտատորներն ունկնդիրներին պատմեցին, թե ինչպես նա յուրաքանչյուր ամիս բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, անընդհատ ավելացնելով հանքանյութի հանույթը։ Այսպես, օրինակ, աշխատանքի առաջավոր Հ. Անտոնյանը երկար և համառ աշխատանքից հետո կարողացավ պայթեցման միջոցով երկրի ընդերքից ավելի շատ հանքաքար պոկել։ Նա կավ հողի և ավազի խառնուրդից պատրաստված խցանյութի միջոցով մեծ չափերով ուժեղացրեց պայթեցվող վայրում առաջացած գազերի նկատմամբ խցանի դիմադրողականությունը. դրա շնորհիվ նրա հանքախոր-

շում պայթեցումը կատարվում էր ավելի խորը և ծավալով ավելի շատ, տալով հանքաքարի ավելի մեծ կուտակում։

Ագիտատորները մասսայականացրին ընկ. Հ. Անտոնյանի աշխատանքի դրական փորձը, «Փոքր» հանքի կոլեկտիվը հասավ նշանակալից հաջողությունների՝ հանքագործների աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 50—60 տոկոսով։

Ղափանի Հանքվարչության ագիտկոլեկտիվը 19-րդ համագումարի որոշումները մասսայականացնելու և այն հանքագործների սեփականությունը դարձնելու իր ամենօրյա աշխատանքի մեջ մեծ տեղ է տալիս ցուցադրական ագիտացիային, օգտագործելով նրա բազմազան ձևերը՝ պատի թերթեր, խլխշովկաներ, «Կայծակ» թերթիկներ, պատվո-տախտակներ, դիագրամաներ, քարտեզներ, լոզունգներ, պլակատներ և այլն։ Հանքվարչության ակումբում, հանքերի կարմիր անկյուններում, հերթափոխություններում ցուցադրական ագիտացիայի միջոցով մասսայականացվում են հետպատերազմյան ժամանակաշրջանում մեր երկրի ձեռք բերած մեծագույն նվաճումները։ Առանձին թերթիկների և ցուցադրական այլ նյութերի միջոցով պարզաբանվում են, թե



ինչպես սովետական ժողովուրդը սրբությամբ կենսագործում է պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները։ Դրա հետ միասին, հանքվարչության ձեռնարկություններում ցուցադրվում են նաև հանքագործների հաջողությունները, աչքի ընկնող տեղերում փակցված են առաջավորների նկարներ, պլանների կատարման ու գերակատարման մասին գեղարվեստորեն ձևավորված տեղեկություններ, կոլեկտիվ մրցության պայմանագրեր և այլն։

Ուժեղացնելով հանքագործների շրջանում կատարվող ագիտացիոն, քաղաքական և բացատրական աշխատանքը, հինգերորդ հնգամյակի երրորդ տարվա պլանները կատարելու և գերակատարելու համար կազմակերպելով ու ծավալելով սոցիալիստական մրցություն, մասսայականացնելով մրցության առաջավորների աշխատանքի դրական փորձը՝ պարտկազմակերպությունը ձեռք է բերել աչքի ընկնող հաջողություններ։

Այժմ հանքերի գրեթե բոլոր կոլեկտիվները կատարում և գերակատարում են արտադրական պլանները։ №№ 1, 2, 7, 10 հանքերի կոլեկտիվները գերակատարել են այս տարվա եռամսյա պլանը։ Առանձին հանքագործներ մեկի փոխարեն օրական կատա-

րում են երկու արտադրական նորմա, ինչպես օրինակ, Ա. Գաբրիելը, Ա. Սարոյանը, Ա. Մասումովը, Օ. Սողոմոնյանը, Բ. Հարությունյանը և շատերը։

Ցլոտացիոն ֆաբրիկայում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 70 տոկոսով, ավելի արդյունավետ կերպով է օգտագործվում մեքենաների և սարքավորումների կարողությունը։ Ֆաբրիկայում լայն ծավալ է ստացել նորարարությունը։ Այստեղ յուրաքանչյուր 7 բանվորից մեկը նորարար է։

Ղափանի հանքվարչության ագիտկոլեկտիվները չպետք է հանգստանան ձեռք բերված հաջողություններով։ Նրանք պետք է ավելի ուժեղացնեն հանքագործների շրջանում կատարվող ագիտացիոն-քաղաքական աշխատանքը, հիշելով, որ քաղաքական ագիտացիան միշտ էլ մեծ ուժ է եղել և օգնել է պարտիային՝ աշխատավորությանը պայքարի հանելու հանուն կոմունիզմի իդեաների հաղթանակի։

Կ. ԹԱՌՈՅԱՆ

---

## ԱԳԻՏԱՑԻԱՆ ՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԲՐԻԳԱԴԱՅՈՒՄ

Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի Լենինի անվան կոլտնտեսության աշխատավորները և մեխանիզատորները, մանելով սոցիալիստական մրցության մեջ, պարտավորություն են ստանձնել ապահովել բամբակի, հացահատիկի և մշակվող բոլոր կուլտուրաների բարձր բերքատվությունը։ Այդ գործում աչքի ընկնող աշխատանք է կատարում շրջանի հենակետային-ցուցադրական մեքենատրակտորային կայանի № 9 տրակտորային բրիգադան։

Դեռևս գարնանացանի առաջին օրերին բրիգադայի տրակտորիստները հանդիպեցին որոշ դժվարությունների։ Ցանք կատարող տրակտորիստներ Վ. Համբարձումյանը և Գ. Սարգսյանը հաճախ թերակատարում էին ցանք կատարելու նախատեսված նորման, չէր պաշտպանվում ագրոկանոններով սահմանված ցանքի խորությունը, լուրջ ուշադրություն չէր դարձվում ուղիղ գծերով ցանք

*կատարելու վրա, դեպքեր էին լինում, երբ ցանող ապարատները խափանումներով էին աշխատում: Նրանք փաստորեն աշխատանքում օգնության խիստ կարիք էին զգում: Այդ օգնությունը նրանց ցույց տվեց ագիտատոր Ն. Հակոբյանը: Լինելով փորձված մեխանիզատոր, Ն. Հակոբյանը խորը կերպով ուսումնասիրեց տրակտորիստների ետ մնալու պատճառները, իսկ այնուհետև օգնեց ետ մնացող տրակտորիստներին կազմելու ժամային գրաֆիկ, բարելավելու մեքենաների տեխնիկական խնամքը:*

*Ագիտատորի այդ օգնության շնորհիվ տրակտորիստներ Վ. Համբարձումյանը և Գ. Սարգսյանը գյուղատնտեսական աշխատանքները ագրոտեխնիկական ժամկետում կատարելու և գյուղատնտեսական մեքենաներն առավել արդյունավետ օգտագործելու գործում զգալի հաջողությունների հասան: Նախ լրիվ վերացվեցին շարքացանների խափանումները և բարելավվեց մեքենաների խնամքը, ապա բարձր որակով կատարվեցին գարնան գյուղատնտեսական աշխատանքները:*

*Այնուհետև ագիտատոր Ն. Հակոբյանը մեխանիզատորների, կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների համար հատուկ զրույց*



*կազմակերպեց առաջավոր տրակտորիստ Լևոն Ցավրումյանի աշխատանքի դրական փորձի մասին:*

*— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարը,— իր զրույցի ժամանակ ասաց ագիտատորը,— գյուղատնտեսության ասպարեզում այսուհետև ևս գլխավոր խնդիրը համարեց բերքատվության հետագա բարձրացումը: Հինգերորդ հնգամյակի դիրեկտիվներում նախատեսվում է բամբակի հումքի բերքատվությունը ավելացնել 55—65 տոկոսով, հացահատիկի համախառն արտադրանքը՝ 40—50 տոկոսով, այդ թվում ցորենինը՝ 55—65 տոկոսով: Այդ կապակցությամբ ագիտատորը մեջբերում կատարեց պարտիայի 19-րդ համագումարում ընկեր Գ. Մալենկովի տված զեկուցումից, ընդգծելով, որ «...հողագործության արտադրանքի ավելացման գործում միակ ճիշտ գիծը հանդիսանում է բերքատվության հետագա ամեն կերպ բարձրացումը: Բերքատվության բարձրացումը գլխավոր խնդիրն է հողագործության մեջ: Այդ խնդիրը հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է բարձրացնել դաշտային աշխատանքների որակը և կրճատել դրանց կատարման ժամկետները,*

բարելավել տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների օգտագործումը, ավարտել հողագործության հիմնական աշխատանքների մեքենայացումը...»:

Անդրկովկասի ռեսպուբլիկաներում, շարունակում է ագիտատորը,— նախատեսված է բամբակի բերքատվությունը հասցնել հեկտարից 25—27 ցենտների: Սակայն մեր շրջանի բամբակագործներն ու մեխանիզատորները սոցիալիստական մրցության մեջ մտնելով, պարտավորվել են այս տարի զգալիորեն գերազանցել հնգամյակում նախատեսված բերքատվությունը և պետությանը հանձնել ամեն մի հեկտարից 30 ցենտներ բամբակի հումք: Սոցիալիստական այդ պարտավորությունները մենք կկատարենք միայն այն դեպքում, երբ բարելավենք տրակտորների ու գյուղատնտեսական մեքենաների տեխնիկական խնամքը, լրիվ օգտագործենք նրանց կարողությունները, բարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը, գյուղատնտեսական կուլտուրաների մշակությունը կատարենք ժամանակին և ագրոտեխնիկական կանոնների համաձայն:

Գյուղատնտեսական աշխատանքները բարձր կազմակերպվածությամբ անցկացնե-



լու համար,— շարունակեց ագիտատորը,— անհրաժեշտ է, որ մեր մեխանիզատորները հարստացնեն իրենց տեխնիկական գիտելիքները, ուսումնասիրեն և արմատավորեն աշխատանքի առաջավոր ձևերն ու մեթոդները: Այդ տեսակետից շատ լավ կլինի, որ մեր մեխանիզատորները ընդօրինակեն մեր ՄՏ կայանի 6-րդ բրիգադայի տրակտորիստ Լ. Ցավրումյանի փորձը: Նա աշխատում է ժամային գրաֆիկով, լավ է խնամում իր մեքենան: Հերթափոխությունն ընդունելիս, նա աչալուրջ կերպով ստուգում է շարժիչների աշխատանքը, սիստեմատիկաբար մաքրում իր մեքենան և կցվող գործիքները, կանոնավորում է նրանց աշխատանքը: Երեք ժամ անընդհատ աշխատելուց հետո նա կանգ է առնում՝ մեքենաները կարգի բերելու համար: Մեքենաների տեխնիկական խնամքը բարելավելու նպատակով տրակտորի անձնակազմի մեջ կատարվել է աշխատանքի բաժանում և ամեն մեկը պարզ ու որոշակի գիտի իր պարտականությունը:

Ագիտատորի զրույցից հետո տրակտորային բրիգադան սոցիալիստական նոր պարտավորություններ ստանձնեց: Բրիգադայի մեխանիզատորները պարտավորվում են լրիվ կատարել մեքենատրակտորային կայանի և

կոլտնտեսության միջև կնքված տիպային պայմանագրերով նախատեսված պարտավորությունները, անշեղորեն իրագործել ագրոտեխնիկական կանոնները: Աշխատանքի արտադրողականության բարձրացման, մեքենաների կարողությունների լրիվ օգտագործման միջոցով տրակտորային աշխատանքի տարեկան պլանը կատարել 150 տոկոսով, ինքնարժեքը, պլանի համեմատ, իջեցնել 5 տոկոսով, վառելանյութը տնտեսել 10 տոկոսի չափով: Սպասարկվող դաշտավարական բրիգադաների բամբակի բերքատվությունը հասցնել 35 ցենտների, հացահատիկինը՝ 30 ցենտների, լավագույն ցանքի ու մշակության միջոցով ապահովել նաև գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բարձր բերքը: Այս բանին հասնելու համար նրանք կազմեցին ժամային գրաֆիկ, բարելավեցին մեքենաների տեխնիկական խնամքը և սկսեցին աշխատել Լ. Յավրումյանի օրինակով:

Երկրորդ օրից ագիտատորը սկսեց խստորեն հետևել ստանձնած պարտավորությունների կատարմանը: Օրվա վերջում նա ստուգեց տրակտորիստների կատարած աշխատանքը: Պարզվեց, որ տրակտորիստ Գ. Սարգսյանն ամեն օր գերակատարում է



գրաֆիկով նախատեսված նորման, խստորեն պահպանելով ագրոտեխնիկական կանոնները:

Հաջորդ զրույցը ագիտատորը նվիրեց տրակտորային աշխատանքի որակի բարձրացմանը: Ցույց տվեց որակի բարձրացման տեխնիկական միջոցառումները, նրա նշանակությունը բերքատվության բարձրացման գործում:

Այնուհետև ագիտատորը ձեռնամուխ եղավ բրիգադային իլյիչովկայի լույս ընծայմանը: Իլյիչովկայում լուսաբանվեցին տրակտորային աշխատանքի որակը բարձրացնելու, մեխանիզատորների մեջ մրցություն ծավալելու, ստանձնված պարտավորությունները կատարելու, առաջավոր մեխանիզատորների աշխատանքի փորձը արմատավորելու հարցերը: Իլյիչովկան գրվեց կարճ ժամանակում և փակցվեց դաշտային տնակին: Իլյիչովկայում քննադատվում էր որոշ տրակտորիստների անորակ աշխատանքը, խրախուսվում էր առանձին աշխատողների ուսանելի փորձը: Իլյիչովկայի այդ քննադատությունից հետո մի շարք տրակտորիստներ սկսեցին աշխատել Լ. Յավրումյանի օրինակով, դարձան առաջավորներ:

Հետևյալ օրը ագիտատորը նորից ստու-
գեց առանձնված պարտավորությունների
կատարման ընթացքը և պարզեց, որ բրի-
գադայում բոլոր աշխատողները բարեխղճո-
րեն կատարում են իրենց խոստումը, ան-
ընդհատ բարելավում են գյուղատնտեսա-
կան աշխատանքների որակը։
Այժմ Հոկտեմբերյանի հենակետային ցու-
ցադրական ՄՏ կայանի 9-րդ բրիգադան
ընթանում է առաջավորների շարքերում,
ժամկետից շուտ ու բարձր որակով ավար-
տել է բամբակի և մյուս գյուղատնտեսա-
կան կուլտուրաների ցանքը։ Բրիգադան
զգալիորեն բարձրացրել է տրակտորային
պարկի արտադրողականությունը և տրակ-
տորային աշխատանքների որակը։ Այժմ
համառ պայքար է ծավալվում ցանքերի
հետագա մշակությունը ևս ագրոտեխնիկա-
կան ժամկետներում և ավելի բարձր որա-
կով կատարելու համար։
—Անպայման կատարել սոցիալիստական
մրցությամբ առանձնված պարտավորու-
թյունները և նվաճել ռեկորդային բերք՝ այս
է տրակտորային բրիգադայի մեխանիզա-
տորների ձգտումը։

Ա. ԴԱՂԲԱՇՅԱՆ

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԸ

(Թվեր և փաստեր)

✪ Կոմունիստական պարտիայի, Սովետական կառավարության համար օրենք է հանդիսանում ժողովրդի բարօրության, նրա նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարման նկատառումը անդուլ հոգատարություն ցուցաբերելու պարտականությունը։

Մեր երկրում սոցիալիստական էկոնոմիկայի բուռն վերելքը մշտապես ուղեկցել և ուղեկցում է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական առաջավոր կուլտուրայի անընդհատ զարգացմանը։ Ոչ մի երկրում կուլտուրան չի զարգացել այնպիսի մասշտաբով ու տեմպով, ինչպես այն զարգանում է Սովետական Միությունում։

✪ Սովետական ժողովրդի նկատմամբ պարտիայի և կառավարության անդուլ հոգատարության շնորհիվ մեր երկրում վաղուց

վերացվել է անգրագիտությունը։ Ծավալվել է ժողովրդական մասսաների կուլտուրականության հզոր վերելքը։ Միայն լուսավորության համար կատարվող ծախսերը 1940 թվականի 22,5 միլիարդ ռուբլուց ավելացել՝ 1951 թվականին հասել են 57,3 միլիարդ ռուբլու, այսինքն՝ աճել են ավելի քան 2,5 անգամ։

✪ Բնակչության գրագիտության մակարդակով Սովետական Միությունը աշխարհում առաջին պետությունն է։ Բնակչության գրագիտությամբ մեր երկիրը վաղուց արդեն անցել է այնպիսի երկրներից, ինչպիսին են Ամերիկայի Միացյալ Նահանգները, Անգլիան, Ֆրանսիան, որտեղ կան միլիոնավոր անգրագետներ։

✪ ՍՍՌՄ-ում սովորողների թիվը կազմում է 57 միլիոն մարդ, որը մոտավորապես 49 միլիոնով ավել է 1914 թվականին ցարական Ռուսաստանում սովորողների թվից։ Ջգալիորեն ընդլայնվել է յոթնամյա և տասնամյա ուսուցումը։ 5—10 դասարաններում սովորողների թիվը 1940 թվականից մինչև 1951 թվականն ընկած ժամանակամիջոցում ավելացել է 25 տոկոսով։ Տեխնիկումներում և այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում



սովորողների թիվը նույն ժամանակամիջոցում ավելացել է 40 տոկոսով։

✪ Սովետական Միությունում մեծ տեմպով է աճում բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողների թիվը։ Մեր երկրի բուհերում սովորողների թիվը աճեց՝ 1914 թվականի 112 հազարից 1936—37 թվականներին հասնելով 542 հազարի, իսկ ներկայումս բուհերում սովորողների թիվը հասնում է մեկ միլիոն 400 հազար մարդու, որը մեկ ու կես անգամով գերազանցում է Եվրոպայի բոլոր կապիտալիստական երկրների բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողների ընդհանուր թվից։

✪ Միայն 1952 թվականին բարձրագույն ուսումնական հաստատությունները ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի համար տվեցին 221 հազար երիտասարդ մասնագետներ։

Այժմ մեր երկրում աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մոտ 5,5 միլիոն մասնագետներ, այսինքն 2,2 անգամ ավելի, քան պատերազմից առաջ։

✪ Սովետական ժողովրդի կուլտուրական հետագա աճի ասպարեզում վիթխարի խըն-

դիրներ է նախատեսված ՍՍՌՄ զարգացման
հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ
պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվ-
ներում: Նախատեսված է մինչև հնգամյակի
վերջը ավարտել անցումը յոթնամյա կրթու-
թյունից ընդհանուր միջնակարգ կրթության
ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում, ռես-
պուբլիկական ենթակայության քաղաքնե-
րում, մարզային երկրամասային և արդյու-
նաբերական խոշոր կենտրոններում, իսկ
հաջորդ հնգամյակում իրագործվելու է ընդ-
հանուր միջնակարգ կրթության անցումը
մնացած քաղաքներում և գյուղական վայրե-
րում: Նախատեսված է նոր հնգամյակում
քաղաքային և գյուղական դպրոցների շինա-
րարությունը, նախորդ հնգամյակի համեմա-
տությամբ, ավելացնել մոտավորապես 70
տոկոսով:

Նոր հնգամյակում նախատեսված է բո-
լոր տեսակի բարձրագույն և միջնակարգ
մասնագիտական ուսումնական հաստատու-
թյունների ավարտող մասնագետների թիվն
ավելացնել մոտավորապես 30—35 տոկո-
սով, իսկ 1955 թվականին, 1950 թվականի
համեմատությամբ, արդյունաբերության, շի-
նարարության և գյուղատնտեսության կարե-
վորագույն ճյուղերին բուհերի կողմից տր-



վող մասնագետների թիվն ավելանալու է մո-
տավորապես 2 անգամ:

Աշխարհի ոչ մի երկրում չի ստեղծված այնպիսի պայմաններ գիտության զարգացման համար, ինչպիսին ստեղծված է մեր երկրում: Հաշվի առնելով մեր հասարակության կյանքում գիտության հարաճուն նշանակությունը, Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ամենօրյա հոգատարություն են ցուցաբերում նրա զարգացման նկատմամբ: Միայն ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայում մինչռևոլուցիոն ժամանակի համեմատությամբ, գիտական աշխատողների թիվը ավելացել է 60 անգամ, իսկ նրա բյուջեն՝ 700 անգամ:

ՍՍՌՄ-ում գիտա-հետազոտական ինստիտուտների, լաբորատորիաների և գիտական այլ հիմնարկների թիվը 1939 թվականին եղած 1.560-ից ավելացել՝ 1952 թվականի սկզբին հասել է 2.900-ի: Այդ նույն ժամանակամիջոցում գիտական աշխատողների թիվն ավելացել է համարյա 2 անգամ: Գիտության զարգացման համար 1946—1951 թվականներին կատարված պետական ծախսերը կազմեցին 47,2 միլիարդ ռուբլի:

Նոր հնգամյակում նախատեսվում է առողջապահության, լուսավորության, գիտական

և կուլտուր-լուսավորական հիմնարկների՝ նախատեսվող զարգացմանը համապատասխան, հնգամյակի ընթացքում այդ նպատակներով կապիտալ ներդրումների ծավալը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելացնել մոտավորապես 50 տոկոսով:

✪ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ ցուցաբերել և ցուցաբերում են մեծ հոգատարություն մեր ժողովրդի առողջության պահպանման նկատմամբ: Առողջապահության համար պետական ծախսերը, 1940 թվականի 11,2 միլիարդ ռուբլուց ավելացել՝ 1951 թվականին հասել են 26,4 միլիարդ ռուբլու: Հիվանդանոցային մահճակալների թիվը, 1949 թվականի համեմատությամբ, ավելացել է 30 տոկոսով, բժիշկների թիվը նույն ժամանակաշրջանում ավելացել է 80 տոկոսով: Ընդլայնվել է սանատորիաների ցանցը:

✪ Հինգերորդ հնգամյակում նախատեսվում է է՛լ ավելի ապահովել բնակչության առողջապահության հետագա բարելավումն ու զարգացումը: Ընդլայնվելու է հիվանդանոցների, դիսպանսերների, ծննդատների, սանատորիաների, հանգստյան տների, մանկամսուրների, մանկապարտեզների ցանցը: Հիվանդանոցներում մահճակալների թիվն ա-



վելանալու է 20 տոկոսով, սանատորիաներում տեղերի թիվը՝ մոտավորապես 15 տոկոսով, հանգստյան տներում՝ 30 տոկոսով, մանկամսուրներում՝ 20 տոկոսով, մանկապարտեզներում՝ 40 տոկոսով: Հնգամյակի ընթացքում երկրում ավելանալու է բժիշկների թիվը 25 տոկոսով և մեծ չափով ընդլայնվելու են բժիշկների որակավորման միջոցառումները:

✪ Սովետական ժողովրդի կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարման համար մեր երկրի քաղաքներում ու գյուղերում լայնորեն ծավալվել է կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցը: Սովետական Միությունում կա բոլոր տիպերի 368 հազար գրադարան, որոնք ունեն ավելի քան 830 միլիոն օրինակ գիրք: 1939 թվականի համեմատությամբ գրադարանների թիվը ավելացել է 120 հազարով:

✪ Հնչունային կինոսարքավորումների, թատրոնների և գեղարվեստական սպասարկման հիմնարկների թիվը մեր երկրում զգալիորեն ավելացել է: Միայն հնչյունային կինոսարքավորումների թիվը 1939 թվականից հետո, մինչև պարտիայի 19-րդ համագումարի ժամանակաշրջանը, ավելացել է համարյա 3 անգամ:

Ավելացել է թերթերի, ժուռնալների, գրքերի տարեկան տիրաժը։

✪ Մեր երկրում հրատարակվում է ավելի քան 8 հազար թերթ, ավելի քան մեկ ու կես հազար ժուռնալ ու այլ պարբերական մամուլ։ Թերթերը և ժուռնալները հրատարակվում են Սովետական Միության բոլոր ժողովուրդների լեզուներով։

1952 թվականին հրատարակված գրքերի ընդհանուր տիրաժը հասնում է 851,5 միլիոն օրինակի, որը 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է մոտ 2 անգամ։

✪ 1952 թվականին մարքսիզմի կլասիկների հրատարակված աշխատությունների ընդհանուր տիրաժը հասնում է 86 միլիոն օրինակի, որը 1951 թվականի համեմատությամբ, ավելացել է 1,5 անգամ։

1952 թվականին հրատարակվել է 185 միլիոն օրինակ տիրաժով գեղարվեստական գրականություն, որը 4 անգամ ավելի է, քան 1940 թվականին։ Գիտապոպուլյար գրականությունը 1952 թվականին, 1951 թվականի համեմատությամբ, լույս է տեսել 16 տոկոսով ավելի, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 3 անգամ ավելի տիրաժով։

✪ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի դի-



րեկտիվներում նախատեսվում է հնգամյակի ընթացքում կինոսարքերի թիվն ավելացնել 25 տոկոսով, ինչպես նաև ավելացնել կինոֆիլմերի թողարկումը։ Մասսայական գրադարանների ցանցը ընդարձակել ոչ պակաս, քան 30 տոկոսով, ակումբներինը՝ 15 տոկոսով։ Նախատեսվում է գեղարվեստական և գիտական գրականության, դասագրքերի, ժուռնալների և թերթերի հրատարակման զգալի աճ։

✪ Սովետական ժողովուրդը խոշոր հաջողություններ է ձեռք բերել սովետական գրականության, կերպարվեստի, թատրոնի, կինոյի զարգացման գործում։ Մեր պարտիան և կառավարությունը բարձր են գնահատում գրականության և արվեստի բնագավառում աշխատողներին։ Բավական է նշել, որ գրականության և արվեստի տաղանդավոր գործիչներից 2.339 աշխատողներ արժանացել են Ստալինյան մրցանակի լաուրեատի բարձր կոչման։

✪ Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական իր կուլտուրան է զարգացնում նաև հայ ժողովուրդը։

Հայկական ՍՍՌ-ում հաջողությամբ իրականացվում է պարտադիր, յոթնամյա կրթու-

թյունը գյուղական վայրերում և 10-ամյա պարտադիր ուսուցումը քաղաքում: Ներկայումս ռեսպուբլիկայում կա 1.169 դպրոց, որտեղ սովորում են մոտ 300 հազար աշակերտ և աշխատում են մոտ 16 հազար ուսուցիչ:

Մինչև սովետական կարգերի հաստատումը, Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, իսկ ներկայումս Սովետական Հայաստանում կա 17 բարձրագույն ուսումնական հաստատություն: Միայն ստացիոնար բուհերում սովորողների թիվը հասել է մոտ 12 հազար մարդու:

✪ Չտեսնված զարգացման է հասել ռեսպուբլիկայի ժողովրդական առողջապահության գործը: Սովետական Հայաստանի բնակչությունը բուժօգնությամբ ապահովում է մոտ ինը անգամ ավելի լավ, քան Թյուրքիայի բնակչությունը և 23 անգամ ավելի՝ քան Իրանի բնակչությունը:

✪ Սովետական Հայաստանը պատած է գիտա-հետազոտական ինստիտուտների, կուլտուր-լուսավորական հիմնարկների, լաբորատորիաների լայն ցանցով: Հայ ժողովրդի կուլտուրայի մեծագույն նվաճումներից մեկը՝ դա Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան է, որը միավորում է ավելի,



քան 30 գիտա-հետազոտական ինստիտուտներ և լաբորատորիաներ:

✪ Վերջին ժամանակներս Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ձեռնարկեցին մի շարք կազմակերպական միջոցառումներ՝ պետական և տնտեսական ղեկավարության հետագա բարելավման համար: ՍՍՌՄ Գերագույն Սովետի 4-րդ սեսիան ընդունեց օրենք՝ ՍՍՌՄ մինիստրությունները վերակազմելու մասին: Այդ օրենքի համաձայն ՍՍՌՄ Բարձրագույն կրթության մինիստրությունը, ՍՍՌՄ Կինեմատոգրաֆիայի մինիստրությունը, Արվեստի գործերի կոմիտեն, Ռադիոինֆորմիացիայի Կոմիտեն, Գլավպոլիգրաֆիզդատը և ՍՍՌՄ Աշխատանքային ռեզերվների մինիստրությունը միավորվել են մեկ մինիստրությունում՝ ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրության մեջ: Կուլտուրայի մինիստրության ստեղծումը Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության նոր հոգատարության ցուցադրումն է սոցիալիստական կուլտուրայի հետագա զարգացման համար:

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՃԸ

*Ամեն մի օրը մի նոր անվիճելի վկայություն է այն մեծ առավելությունների, որ ունի Եվրոպայի և Ասիայի ժողովրդա-դեմոկրատական երկրներում հաստատված հասարակական և պետական կարգը։ Սովետական Միության հետ միասին, համաշխարհային ռևոլյուցիոն և բանվորական շարժման նոր «Հարվածային բրիգադաների» աշխատավորները կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարությամբ ընթանում են էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքի, բարեկեցության անշեղ աճման ուղիով։*

*Ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրների աշխատավորները, հենվելով մեծ Սովետական Միության մշտական եղբայրական աջակցության ու օգնության վրա, հաջողությամբ կատարում են սոցիալիզմի հիմքերի կառուցման իրենց հնգամյա և վեցամյա պլանները, լուծում են ինդուստրացման և գյուղատնտեսության սոցիա-*



*լիստական վերակառուցման խնդիրները։ Բարձր տեխնիկայի հիման վրա սոցիալիստական արտադրության անընդհատ աճմանն ու կատարելագործմանը զուգընթաց՝ գնալով ավելի մեծ չափերով են բավարարվում ժողովրդի աճող նյութական և կուլտուրական պահանջմունքները, բարձրանում է բանվորների, աշխատավոր գյուղացիների, ինտելիգենցիայի բարեկեցությունը։*

*Միլիոնավոր մարդիկ ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ընդմիշտ փրկվել են կապիտալիստական շահագործումից. նրանք այլևս չգիտեն ճգնաժամեր և գործազրկություն, շարունակ ավելանում է նրանց ռեալ աշխատավարձը։ Աճում են նոր բնակելի շենքերի թաղամասեր։ Բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան հանգիստ են վայելում և բուժվում լավագույն կուրորտներում և հանգստյան տներում, կրթություն են ստանում դպրոցների, դասընթացների լայն զարգացած ցանցում, ինստիտուտներում։*

*Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկաների աշխատավորները իրենց զգում են որպես իրենց երկրների իսկական տերեր։ Նրանք հպարտությամբ են գիտակցում, որ իրենց աշխատանքից է կախված հայրենի-*

քի հարստությունների աճումը, ժողովրդի բարեկեցության վերելքը։

Ժողովրդական Լեհաստանի վաստակավոր հանքագործ «Մորտիմեր» հանքահորի հանքափոր Կոնստանտին Կովալսկին ասում է. «Գործազրկությունն այժմ մի հիշողություն է կապիտալիստական մռայլ անցյալից։ Ես իմ դառը փորձով գիտեմ, թե ինչ ասել է գործազրկություն... Ոչ ոքի պետք չէին իմ ձեռքերը, այն ձեռքերը, որոնք այսօր նորման կատարում են ավելի քան 300 տոկոսով։ Ժողովրդական Լեհաստանում բանվորը աշխատում է ոչ կապիտալիստի համար, նա աշխատում է ամբողջ ժողովրդի բարօրության համար, աշխատում է իր համար և իր ընտանիքի համար»։ Կապիտալիստական կարգի հանդեպ սոցիալիստական կարգի գերազանցության նկատմամբ հասարակ մարդու ունեցած այս խոր համոզմունքը ամրացված է առօրյա իրականությամբ։

Ազատ երկրներում հասարակական հարստության ավելացման և ժողովրդական մասսաների բարեկեցության բարձրացման գլխավոր, առավել ցայտուն և ակնբախ ցուցանիշներից մեկը ազգային եկամտի աճումն է։ Բուլղարիայում, օրինակ, 1952



թվականին ազգային եկամուտը կրկնակի գերազանցեց նախապատերազմյան 1939 թվականի մակարդակը, հասնելով այն մակարդակին, որ նախատեսված էր ռեսպուբլիկայի հնգամյակի վերջին տարվա՝ 1953 թվականի համար։ Նախապատերազմյանի համեմատությամբ ազգային եկամուտը կրկնապատկվել է նաև Ժողովրդական Լեհաստանում, համարյա երկու անգամ աճել է Ռումինիայում։ Նման պատկեր գոյություն ունի ժողովրդական դեմոկրատիայի նաև բոլոր մնացած երկրներում։

Սակայն բանը միայն ազգային եկամտի աճը չէ։ Եթե կապիտալիստական երկրներում ազգային եկամտի կեսից ավելին յուրացնում են շահագործող դասակարգերը, ապա ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ամբողջ ազգային եկամուտը պատկանում է աշխատավորներին։ Ազգային եկամտի մոտ երեք քառորդը նրանք ստանում են իրենց անձնական նյութական և կուլտուրական պահանջմունքները բավարարելու համար, իսկ մնացած մասը, որ օգտագործվում է արտադրության ընդլայնման համար, ծառայում է ամբողջ հասարակության աճող պահանջմունքների ապահովմանը։

խաղաղության և դեմոկրատիայի լագերի երկրների աշխատավորության կյանքի որ կողմն էլ վերցնելու լինեք՝ ամենուրեք վառ կերպով երևում է միլիոնավոր մարդկանց բարեկեցության աճը, կենսամակարդակի բարձրացումը, կուլտուրայի վերելքը։

Ահա, օրինակ, Ռումինիան։ Եթե ռեսպուբլիկայի աշխատավորների 1950 թվականի ռեալ եկամուտները ընդունենք հարյուր, ապա դրանք 1951 թվականին աճել են մեկ երրորդով, իսկ 1955 թվականին՝ ռումինական հնգամյակի վերջին տարում կավելանան համարյա 2,5 անգամ։ Առանձնապես արագորեն բարձրանում է հանքագործների, մետալուրգների, նավթագործների կենսամակարդակը։ Այսպես, միայն 1952 թվականին հանքագործների աշխատավարձը բարձրացավ համարյա մեկ երրորդով։ Շատ մասնագիտականների, արտադրության առաջավորների հաշվեգրքույկները ցույց են տալիս, որ նրանց ամսական աշխատավարձը 12—15 անգամ շատ է այն աշխատավարձից, որ ստանում էր որակյալ հանքափորը հին Ռումինիայում։

Էկոնոմիկական շինարարության ասպարեզում ձեռք բերված հաջողությունները ժողովրդական դեմոկրատիայի երկրներում



պայմաններ են ստեղծում արդյունաբերական և պարենային ապրանքների մանրածախ գները հետևողականորեն իջեցնելու քաղաքականություն վարելու, քարտային սիստեմը վերացնելու համար։ Բուլղարիայի կառավարությունը դեռ անցյալ տարվա մայիսին անցկացրեց դրամական ռեֆորմ, վերացրեց պարենային ապրանքների նորմավորումը (արդյունաբերական ապրանքների քարտային սիստեմը վերացվեց 1951 թվականին), իրագործեց գների հերթական իջեցումը և բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացումը։ Դրա շնորհիվ աշխատավորները շահեցին 800 միլիոն լև (1 լևը հավասար է 59 կոպեկի)։ Էլ ավելի մեծ գումար— 1 միլիարդ 250 միլիոն լև կտնտեսեն նրանք գների նոր իջեցման շնորհիվ, որն անցկացվեց 1952 թվականի սեպտեմբերի 1-ից։ Հունգարիայում քարտային սիստեմը հիմնականում վերացվեց 1951 թվականի դեկտեմբերին, իսկ լրիվ՝ 1952 թվականի փետրվարին։ Հունգարիայում միայն 10 ամսվա ընթացքում յուրաքանչյուր շնչի համար սպառվող ալյուրի քանակն ավելացավ մեկ երրորդով, շաքարինը՝ մեկ քառորդով, ճարպինը և յուղինը՝ մեկ և կես անգամ և այլն։ Ռումինիայում

1952 թվականին լայն սպառման ապրանքների գների իջեցման շնորհիվ աշխատավորները շահեցին 500 միլիոն լեյ (1 լեյը հավասար է 36 կոպեկի)։ Այս տարվա սկզբներին վերջնականապես ոչնչացվեց քարտային մատակարարումը, կարգավորվեցին գները, աշխատավարձի ընդհանուր բարձրացում անցկացվեց Լեհաստանում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ճշմարտապես վիթխարի մասշտաբներ է ընդունում բնակարանային և կոմունալ շինարարությունը։ Չեխոսլովակիայում արագ տեմպերով վերակառուցման է ենթարկվում Բոլշայա Օստրավան՝ հանքագործների և մետալուրգների քաղաքը։ Ածխի հանույթի կենտրոն Մոստի մոտ կառուցվում է մի գեղեցիկ, ընդարձակ ու լուսավոր քաղաք՝ 40 հազար բնակչի համար։ Նոր քաղաքի առաջին, հիանալի հարմարություններ ունեցող բնակարաններում արդեն ապրում են ածխահատների ընտանիքները։

Լեհաստանում անցյալ տարի կառուցվեց ավելի քան հարյուր հազար սենյակ։ Դա 20 անգամ ավելի է, քան կառուցվել է 1947 թվականին և 35 տոկոսով ավելի, քան 1951 թվականին։ Նոր լուսավոր թաղամասեր են բարձրանում Սոֆիայում, Դիմիտրովգրա-



դում, Պլովդիվում, Դիմիտրովոյում, Գաբրովոյում և Բուլղարիայի մյուս արդյունաբերական կենտրոններում։ Ալբանիայի հանքագործների համար միայն վերջին երեք տարում երեք անգամ շատ բնակելի տարածություն է կառուցվել, քան Ալբանիայի ազատագրումից առաջ՝ նրա գոյության ամբողջ ժամանակաշրջանում։

Եթե առաջ բժիշկների մոտ և բժշկական հիմնարկներում մուտք ունեին բնակչության միայն ունևոր մասը, ապա այժմ ժողովրդական դեմոկրատիայի երկրներում միլիոնավոր աշխատավորներ վայելում են ձրի բժշկական օգնություն։ Լայն զարգացում է ստացել պետական սոցիալական ապահովագրությունը։ Բացվում են ավելի ու ավելի շատ բժշկական հիմնարկներ, հիվանդանոցներ, պոլիկլինիկաներ, կոնսուլտացիաներ, մանկապարտեզներ և մանկամսուրներ։

Բուլղարիայում, օրինակ, առողջապահության կարիքների համար կատարվող հատկացումները, 1944 թվականի համեմատությամբ, աճել են ավելի քան 18 անգամ, հիվանդանոցներում մահճակալների թիվն ավելացել է 3,5 անգամ, իսկ պոլիկլինիկաներինը՝ ավելի քան 10 անգամ։ 1951 թվա-

կանից ձրի բժշկական օգնություն ստացնելու և դեղորայքի գները զգալիորեն իջեցնելու հետևանքով Բուլղարիայի աշխատավորները այդ գործում տարեկան տնտեսում են 2,5 միլիարդ լև:

Լեհաստանում նախապատերազմյանի համեմատությամբ բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող հիվանդանոցային մահճակալների թիվն ավելացել է 2,5 անգամ. մանկական կոնսուլտացիաների թիվը՝ 3 անգամ, մսուրներում տեղերի թիվը՝ 50 անգամ:

Դեռևս մոտիկ անցյալում, 9—10 տարի առաջ, հասարակ լեհը կամ բուլղարը, չեխը կամ ռումինը կարո՞ղ էր անգամ երազել կուրորտ գնալու մասին: Իսկ այժմ Չեխոսլովակիայի համաշխարհային հռչակ վայելող Մարիանսկի Լազնիի կամ Կարլովի Վարիի, Հունգարիայի Բալատոն լճի ափի, Ռումինիայի և Բուլղարիայի սևծովյան կուրորտները դարձել են աշխատավորների սեփականությունը: Բուլղարիայում, օրինակ, արդեն 1951 թվականին առողջարաններում է եղել յուրաքանչյուր հինգերորդ բանվորը և ծառայողը: Ռումինիայում 1952 թվականին կուրորտներում և սանատորիաներում հանգստացել են ավելի քան 300 հազար աշ-



խատավորներ: Չեխոսլովակիայում ժողովրդական իշխանության գոյության տարիներին մի քանի անգամ աճել է սանատորիաներից և հանգստյան տներից օգտվողների թիվը:

Աշխատավորների բարեկեցության աճման, առողջապահության բարելավման շնորհիվ ավելանում է ծննդաբերությունը և պակասում մահացությունը: Չեխոսլովակիայում բնակչության տարեկան աճը այժմ երեք և կես անգամ բարձր է, քան պատերազմից առաջ: Բուրժուա-կալվածատիրական կարգերի օրոք Ռումինիան համարվում էր Եվրոպայի այն երկիրը, որտեղ ամենից բարձր էր երեխաների մահացությունը: Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում երեխաների մահացությունը, նախապատերազմյանի համեմատությամբ, նվազել է ավելի քան երկու անգամ:

Ժողովրդական ռեսպուբլիկաները այժմ իսկական կուլտուրական ռևոլյուցիա են ապրում: Տարեց տարի աճում են կրթության, գիտության և արվեստի համար, կուլտուրական հիմնարկների շինարարության համար կատարվող պետական հատկացումները: Գիտելիքները, գիտությունը դարձել են ժողովրդի սեփականությունը:

Ժողովրդական Լեհաստանը, օրինակ, ամբողջովին վերացրել է անգրագիտությունը։ Այժմ յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է դպրոցներում 2500 սովորող, մինչդեռ պատերազմից առաջ ընկնում էր մեկ և կես հազարից էլ պակաս։ Հունգարիայում այժմ յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է 51 ուսանող, այսինքն՝ զգալիորեն շատ, քան այնպիսի երկրներում, ինչպիսիք են Անգլիան, Ֆրանսիան, Հոլանդիան, Շվեյցարիան կամ Ավստրիան։ Բուլղարիայում, որն ունի 7 միլիոն բնակչություն, աշնանը դպրոցական նստարանին նստել էր մոտ 1 միլիոն 300 հազար երեխա։ Համալսարաններում և ինստիտուտներում սովորում են 30 հազար ուսանող, որը մի քանի անգամ ավելի է, քան եղել է երկրի ազատագրումից առաջ։

Ամբողջ աշխարհը ականատես է այն խանդավառության, որով աշխատում է չին մեծ ժողովուրդը՝ իր ժողովրդական տնտեսության զարգացման համար։ Իր Կոմունիստական պարտիայի, իր առաջնորդ Մաո Ցզե-դունի ղեկավարությամբ ներկայումս նա ձեռնամուխ է եղել էկոնոմիկական լայն շինարարության։ Սովետական Միության եղբայրական օգնությամբ Չինական Ժողո-



վրդական Ռեսպուբլիկայում կառուցվում են նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, ածխահորեր ու հանքահորեր, անց են կացվում երկաթուղիներ, կատարվում են վիթխարի ոռոգացիոն աշխատանքներ։ Չինաստանը անցյալում քայքայված և աղքատ այդ երկիրը, երեք տարում ավելի քան կրկնապատկեց արդյունաբերական արտադրանքի ծավալը, մեկ և կես անգամ ավելացրեց գյուղատնտեսական արտադրությունը։ Չինաստանը ներկայումս հացահատիկ է մատակարարում Հնդկաստանին և Ցեյլոնին։ Աճող էկոնոմիկական շինարարության հետ մեկտեղ՝ բարելավվում է Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի աշխատավորների կյանքը։

Դա առանձնապես ակնառու կերպով երևում է բնակչության գնողունակության բարձրացումից։ Ահա, օրինակ, տվյալներ Հյուսիս-Արևելյան Չինաստանի վերաբերյալ։ Եթե 1949 թվականին այդ շրջանի բնակչության կողմից սպառվող բոլոր սննդամթերքների մեջ բրինձը և ցորենի ալյուրը կազմում էին հազիվ մեկ տասնորդական մասը, ապա 1952 թվականին կազմեցին արդեն 40 տոկոսը, ձվի, խոզի մսի և այլ

սննդամթերքների սպառումը ավելացավ 10
անգամ։
Ագրարային ռեֆորմի և գյուղատնտեսա-
կան արտադրության աճման շնորհիվ միան-
գամայն փոխվել են միլիոնավոր չին գյու-
ղացիների կյանքի պայմանները։ Բնորոշ է
այն փաստը, որ բերեց Խաղաղության
Ստալինյան միջազգային մրցանակի լաու-
րեատ Ջեյմս Էնդիկոտը, որը ավելի քան
20 տարի անց է կացրել հին Չինաստանում՝
որպես միսիոներ։ Նա կրկին այցելեց Չի-
նաստան անցյալ տարի։ «Մենք երբեք չենք
մոռանա,— գրում է Էնդիկոտը,— Պեկինի
մոտ մեզ հանդիպած երիտասարդ ժպտերես
գյուղացուն, որը ցույց տվեց կառավարու-
թյան օգնությամբ իր ձեռք բերած կատարե-
լագործված գութանը։ Երբ մենք նրան
պատմեցինք Սովետական Միությունում սոց-
բեկական կոլտնտեսականների մոտ մեր տե-
սած ավտոմոբիլների մասին, նա դարձյալ
ժպտաց և ասաց. «Ազատագրումից առաջ
ես մի հասարակ բատրակ էի։ Ոչ արտա-
դրության գործիքներ ունեի, ոչ էլ գույք։
Իմ մտքով անգամ չէր կարող անցնել, թե
կկարողանամ ամուսնանալ, էլ չեմ խոսում
այն մասին, թե կկարողանամ տուն ձեռք
բերել։ Այժմ ես կցանկանայի ցույց տալ



ձեզ իմ կառուցած տունը, ահա և իմ կինն
ու տղան։ Երբևէ ավտոմոբիլ էլ կունե-
նանք»։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների
ձեռք բերած հաջողությունների ֆոնի վրա
էլ ավելի ակնառու են դառնում այն խոր
հակասությունները, որոնք բզկտում են նե-
խող կապիտալիստական հասարակարգը։
Կապիտալի երկրներում մոնոպոլիստները
առավելագույն շահույթներ կորզելու համար
հրեշավոր կերպով շահագործում են աշխա-
տավորներին, գործազրկության, քաղցի ու
աղքատության մատնում նրանց։ ԱՄՆ-ում,
Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում
աշխատավորների ուսերին է ընկած պատե-
րազմական հսկայական ծախսերի ծանր
բեռը։ Աճում են հարկերը, բարձրանում են
գները, ընկնում է աշխատավոր բնակչու-
թյան կենսամակարդակը։ Միայն ԱՄՆ-ում,
Ճապոնիայում, Անգլիայում, Իտալիայում,
Բելգիայում և Արևմտյան Գերմանիայում
կան 32 միլիոն լրիվ և մասնակի գործա-
զուրկներ։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրները
հաստատակամորեն և վստահությամբ ա-
ռաջ են ընթանում պրոգրեսի և բարգավաճ-
ման ուղիով։ Հենվելով Սովետական Միու-

թյան բարեկամության և եղբայրական օգնության վրա՝ նրանք հաջողությամբ կատարում և գերակատարում են ժողովրդատնտեսական պլանները, ամրապնդում են մեծ Սովետական Միության կողմից գլխավորվող խաղաղասեր դեմոկրատական ճակատը։ Կոմունիստական և բանվորական պարտիաների առաջնորդությամբ այդ երկրների աշխատավորները կառուցում են սոցիալիզմի լուսավոր շենքը։

«Սոցիալիզմը,— գրել է լեհ ժողովրդի առաջնորդ Բոլեսլավ Բերուտը,— դա ազատ մարդու ստեղծագործական, երջանիկ կյանքն է։ Դա՝ հասարակության արտադրողական ուժերի անընդհատ հուժկու զարգացումն է։ Դա՝ ազատ և անկախ ժողովուրդների բարգավաճումն է։ Դա՝ նրանց բարեկեցության և կուլտուրայի անընդհատ աճումն է։ Դա՝ մարդկության առաջադիմության և ստեղծագործական բարգավաճման հրաշալի ուղին է, լուսավոր ապագայի ուղին»։

Ն. ԲԱԲԻՆ

---

Խմբագրի տեղակալ՝ Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

ՎՖ 02375 Պատվեր № 454 Տիրաժ 9550

Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1953 թ.։